...ին հարցաքննութեան առթիւ, ժօռժ Փէյիւրէի խորհուրդով էր որ Ասլանեան պաշտօնական տեղեկութիւններ հաղորդած էր, դատական իշխանութիւնը մոլորեցնելու համար։

Այս յայտնութեանց վրայ, հարցաքննիչ դատաւորը հրամայեց բանտարկել Ասլանեանը, Սանթէի բանտին մէջ։ Նոյն օրը ուրիշ խուզարկութիւններ ալ կատարուեցան։

## Գերմանիոյ օդանաւային զաղտնիքները

Փետրուար 11ին հրատարակուեցաւ Գերմանիոյ «Օդանաւային Տարեգիրք»ը, Պերլինի եւ Միւնիխի մէջ միաժամանակ։ Օտար թղթակից մը որ կարդացած է զայն, կը գրէ թէ տարեգիրքը մեծ վերապահութեամբ կը շօշափէ Գերմանիոյ օդանաւային ուժը, բայց մանրամասն տեղեկութիւններ կուտայ անգլիական եւ ուրիշ պետութեանց օդատորմիղներու մասին։ Գիրքը բաժնուած է հինգ գլուխներու։ Երկրորդ գլխուն մէջ —բաշխում օդային ուժերու— երեք էջ յատկացուած է Անգլիոյ, ամենայայն մանրամասնութիւններով, օդանաւերու թիւերէն մինչեւ արհեստագիտական գաղտնիքները, օդատորմիղներու բաշխումը, գիրքը, հրամանատարութիւնը եւն.։ Նոյն գլուխին մէջ, տարեգիրքը միայն երկու տող կը պարունակէ Գերմանիոյ օդային ուժերու բաշխման մասին։ Ուրիշ գլուխի մը մէջ, որ կը ներկայացնէ օդանաւերու թիւը եւ տեսակները, տարեգիրքը մանրակրկիտ տեղեկութիւններ կուտայ անգլիական օդանաւերու մասին, աւելցնելով թէ 1937ի վերջը առաջին կարգի օդանաւերու թիւը պիտի ըլլար 2050, իսկ պահեստիները պիտի կրկնապատկուէին։ Նոյն գլուխին մէջ, Գերմանիոյ վերաբերեալ էջը ամբողջովին պարապ ձգուած է։ Վերջապէս լայն տեղեկութիւններ կան անգլիական մեքենաներու տեսակին, ուժին, շինութեանց եւն. մասին. իսկ միայն մէկ բառ՝ գերմանականի մասին, — «Կը պատրաստուի»։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆԻՈՅ կացութեան մասին շրջած զրոյցները նորէն հերքուեցան, պաշտօնապէս։ Այդ առթիւ գերմանական կառավարութիւնը առջի օր արգիլեց անգլիական եւ ֆրանսական թերթերուն մուտքը։ Գերմանիոյ քարոզչութեանց նախարարը իր կարգին կը հերքէ այն լուրերը թէ մասնաւոր յանձնաժողովներ կազմուած են, բանակին զտման համար։

ԵՐԵՔ ՕՏԱՐԱԿԱՆՆԵՐ ԾԱՆՐ ՊԱՏԻԺՆԵՐ ԿՐԵՑԻՆ Փարիզի պատժական 10րդ ատեանին առջեւ, անսաստած ըլլալով արտաքսման հրամանագիրներու։ Մէկը, հունգարացի Պալասա, որ վտարուած էր երեք տարի առաջ եւ սակայն կը շարունակէր Փարիզ բնակիլ, դատապարտուեցաւ տասը միս բանտարկութեան։ Երկրորդը, իտալացի հացագործ Պոթօ, որ արտաքսուած էր 1934էն ի վեր, դատապարտուեցաւ ութ ամսուան, երրորդը՝ Չինացի մը, վեց ամսուան։ Մինչեւ հիմա 15 օրէն մինչեւ մէկ ամիս պատիժ կը սահմանուէր այս կարգի յանցանքներու։

ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆԸ կ'աւելնայ, համաձայն փետրուար 3ի շաբաթական տեղեկագրին։ Նպաստընկալ գործազուրկներու թիւն է 406.050, ինչ որ 2237 հոգիի յաւելում մը կը ցուցնէ նախորդ շաբթուան վրայ։ Փարիզի շրջանին մէջ նպաստընկալ գործազուրկներու թիւն է 204.907։

ՍՊԱՆԻԱՅԷՆ հասած վերջին լուրերու համաձայն, հաւանական է որ զինադադար մը կնքուի, պատերազմը վերջացնելու համար օտար պետութեան մը միջնորդութեամբ։ Հանրապետական շրջանակներու մէջ կը հերքեն այս լուրը, ընդգելով թէ իրենք պիտի յաղթեն, եթէ օտար կամաւորները ետ կանչուին։

ԲՈՒՌՆ ՓՈԹՈՐԻԿ ՄԸ ծագեցաւ Մարսէյլի նաւահանգիստին մէջ, խանգարելով ծովային եւ օդանաւային երթեւեկները։ Փոթորիկը ծանր վնասներ պատճառեց քաղաքին մէջ։ Վիրաւորներ ալ կան։ Օդային թղթատարը ջնջուեցաւ։

ԳՈՐԾԱԴՈՒԼ ծագեցաւ Թուլուզի օդանաւային հաստատութեան մէջ եւ կը տեւէ օրէ օր։ Պ. Տալատիէ որոշեց միջոցներ ձեռք առնել, աշխատանքը վերսկսելու համար։

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ անընդհատ ձիւն կը տեղայ Պաղեստինի, Սուրիոյ եւ Լիբանանի մէջ, փակելով ճամբաները։ Երուսաղէմի մանուկներէն շատերը առաջին անգամ է որ ձիւն կը տեսնեն։ Ծովն ալ փոթորիկի բռնուած ըլլալով, նաւահանգիստները փակուած են։

ԱԹԷՆՔԷՆ կը հեռագրեն — Երէկ Աթէնքէն հեռացուեցան նախկին նախարարներ Թէոթոքիս եւ Միխալաքոփուլոս, որոնք փորձած էին զրպարտիչ հրատարակութիւններու միջոցաւ խռովել երկրին անդորրութիւնը եւ խախտել հանրային վարկը։ Ասով տասնի կը բարձրանայ Աթէնքէն հեռացուած նախկին նախարարներու թիւը, որոնց վրայ պէտք է աւելցնել նաեւ վեց սպաներ։

ՀԱԿԱՀՐԷԱԿԱՆ հոսանք մըն ալ Հունգարիոյ մէջ կը նշմարուի։ Փէշթայի կաթոլիկ օրկանը, «Իւժ Նէմզէտէքս» ազգայնական հոսանքը զօրացնելու համար, կ'առաջարկէ հակահրէական քաղաքականութիւն մը վարել այն Հրեաներուն հանդէպ որոնք Հունգարիա գաղթած են 1914էն վերջ եւ մեծապէս օգտուած պատերազմէն՝ իրենց հարստութիւնը աւելցնելու համար։ Թերթը կը պահանջէ գրաւել այդ հարստութիւնները։ Պէտք է մասնաւոր ատեաններ կազմուին, այս ծրագիրը գործադրելու համար։ Այդ ատեաններուն պաշտօնը պիտի ըլլայ — 1 Վերաքննել Հրեաներու հպատակութիւնը — 2. Ստուգել իրենց հարստութեանց յաւելման գաղտնիքը — 3. Վճիռներ արձակել, որ կրնան համնիլ մինչեւ այդ հարստութեանց ամբողջական գրաւումը։



## Այց Ընկ. Յովհաննէս Ակինեանի գերեզմանին

Ընկեր Յ. Ակինեանի մահուան հրդ. տարելիցին առթիւ կը կազմակերպուի այց իր գերեզմանին, Կիրակի, 18 Փետրուար, կէսօրէ վերջ ժամը 3ին։

Կը խնդրուի ընկերներէն եւ բարեկամներէն սրտցաւ ժամուն ներկայ ըլլալ Porte de la Villetteի մէթրոյի մուտքին կամ Pantinի գերեզմանատան գլխաւոր դուռին մօտ։

Գերեզմանին հասցէն է՝ 108 division, թիւ 9։




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13) A. DER (AGOPIAN)

